ուսելութիւնը պիտի տկարանայ ժամանակի ընթացքին, բայց այդ տկարացումը պիտի փոխարինուի՝ Եւրոպայի մէջ համախմբուելիք ցամաքային, ծովային եւ օդանաւային ուժերով » :

Հաստատելով թէ գինուորակա ն ուժերը կը զօրանան Արեւելեան Գերմանիոյ եւ արբանեակ երկիրներու մէջ, Պ. Էչիսըն ըսաւ.—

— Ուժերու այս կուտակումը կրնայ հնարաւոր դարձնել յարձակում մը, որուն պատասխանատուութիւնը իր վրայէն պիտի ուզէր նետել իրական պատասխանատուն : «Խ. Միութեան արբանեակները կրնան օգտագործուիլ այսպիսի «աքօղեալ յարձակումներու» համար, յուսալով որ անպատիժ պիտի մնան, «քանի որ ազատ երկիրները, կամ ամբողջական պատերազմի մը զէնքրով պիտի կռուին եւ կամ բնաւ պիտի չկռուին» : Պաշտպանողական բաւարար ուժերու ներկայութիւնը պիտի արգիլէր այս փորձը :

Պ. Էչիսընի համաձայն, Մ. Նահանգները երեք տեսակի պարտականութիւններ ունին.—

1) Արգիլել պատերազմը :— 2) Թոյլ չտալ որ Խ. Միութիւնը կարենայ իր յարձակողական ծրագիրները իրագործել պատերազմէն զատ ուրիշ միջոցներով : — 3) Ապահովել ազատ ազգերու յաղթանակը, եթէ պատերազմը անխուսափելի դառնայ :

— « Մեր սկզբնական նպատակը այն չէ, թէ ինչպէս պիտի շահինք պատերազմը պայթելէն վերջ, այլ գիտնալ թէ ինչպէս պիտի արգիլենք զայն եւ օգնենք Եւրոպային, որ ազատ մնայ : Եթէ առաջադրէինք գործի անցնիլ յարձակում մը գործուելէն վերջ, այդպիսի բան մը, Եւրոպացիներու մօտ պիտի ստեղծէր «չէզոքութեան կլիմայ» մը եւ անկարելի պիտի դարձնէր անոնց դիմադրութիւնը, ինչ որ մեզ ու մեզի հետ միւս ազգերը պիտի կեցնէր «անձնասպանութեան ճամբուն վրայ» : Եւ եթէ Ատլանտեանի դաշինքին անդամ իւրաքանչիւր երկիր, իր սեփական ճիգը ի գործ դնելէ առաջ սպասէր տեսնել, թէ ինչ պիտի ընեն իր գործակիցները, արգիւնքը անկասկած աղիտալի պիտի ըլլար : Այն ատեն նորէն պիտի լսէինք «շատ քիչ է, շատ ուշ է» տրտունջները, բայց այս անգամ ժամանակ պիտի չունենայինք դարմանելու այս սխալը » :

Պ. Էչիսըն յոյս յայտնեց, թէ ապագային, աւելի սերտ գործակցութիւն մը պիտի ստեղծուի Մ. Նահանգներու, իրենց դաշնակիցներուն եւ Սպանիոյ միջեւ : «Մինչեւ հիմա, սպանիացի վարիչները, վճռական եղանակով մը չպարզեցին իրենց դիտաւորութիւնները, բայց այժմ նոր շրջան մը կը բացուի մեր յարաբերութեանց մէջ, շնորհիւ դեսպաններու փոխանակութեան » :

Արտաքին Նախարարը չեշտեց նաեւ Թուրքիոյ եւ Յունաստանի Ատլանտեանի դաշինքին անդամակցելու կարելիութիւնը, բայց չուզեց մանրամասնութիւններ տալ :

ԹՈՒՐՔԻԱՆ ՕԴԱՆԱՒԱՅԻՆ ԽԱՐԻՍԽ
ՄԻՋԻՆ ԱՐԵՒԵԼՔԻ

Ամերիկեան օդանաւային նախարար Պ. Ֆինլէթըրի Թուրքիա այցելութեամբ երեւան կուգայ, որ Մ. Նահանգները որոշած են Միջին Արեւելքի օդանաւային կեդրոնական խարիսխը դարձնել այդ երկիրը եւ այնտեղ համախմբել օդանաւային այն բոլոր ուժերը, որոնք, պատերազմի մը պարագային, անհրաժեշտ են այդ շրջանի պաշտպանութեան համար : Մ. Նահանգները, այս նպատակով, որոշած են իրենց իսկ ծախքով յարդարել Թուրքիոյ բոլոր օդանաւային կայանները, որոնք գլխաւորաբար կը գտնուին Ատանայի եւ Պրուսայի շրջջաններուն մէջ : Պ. Ֆինլէթըր այցելած է այս բոլոր կայանները եւ անհրաժեշտ թելադրութիւնները ըրած է անոնց յարդարման համար :

Ասկէ զատ, ամերիկեան եւ բրիտանական մասնագէտները կը խորհրդակցին օդանաւային այլկայաններու օգտագործման մասին : Մ. Նահանգները, օդանաւային խարիսխներ պիտի ունենան Կիպրոսի, Պէնկազիի (Լիբիա), Հապպանիէի (Իրաք) եւ Միջին Արեւելքի այլ շրջաններուն մէջ : Աշխատանքներ կը տարուին Իսրայէլն ալ առնելու համար օդանաւային պաշտպանութեան այս ցանցին մէջ :

—

ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՎԵՐԱԶԻՆՄԱՆ գործը դիւրացնելու համար, Մ. Նահանգները 375 միլիոն տոլարի վարկ մը պիտի տրամադրեն Իտալիոյ :

ԱՐՄԱՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ նախագահը, Պ. Էռիօ, հրաժարեցաւ այդ պաշտօնէն, զոր կը վարէր 25 տարիէ ի վեր : Կ՚ըսուի թէ հըրաժարումը հետեւանք է արմատական կուսակցութեան կարգ մը անդամներուն եւ զօր. տը Կոլի կուսակիցներուն գործակցութեան, որ կոչուի «կրկնամուսնութիւն» : Կը կարծուի թէ Էռիօ նոր խմբակցութիւն մը պիտի կազմէ :

Խ. ՄԻՈՒԹԻՒՆԸ չորրորդ ծանուցագիր մը ուղղեց Մ. Նահանգներուն, բողոքելով Ճափոնի պատերազմի ոճրագործներու արձակման դէմ :














Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN 17 rue Damesme – (13)


ՅՈՒՇԱՏԵՏՐ

Հ.Յ.Դ. ՓԱՐԻԶԵԱՆ ՇՐՋԱՆԻ ՄԱՐՄԻՆՆԵՐՈՒ միացեալ նիստը՝ այս հինգշաբթի ժամը 20.30ին, սովորական հաւաքատեղին : Մարմիններու բոլոր անդամները պարտաւոր են ներկայ ըլլալ :

ՊԷԼՎԻԼ.— Հ. Յ. Դ. «Ռոստոմ» խումբի ժողովը այս կիրակի առաւօտ ժամը 9ին, ծանօթ հաւաքատեղին :

Ֆ. Կ. ԽԱՉԻ Իթալիի մասնաճիւղի ընդհ. ժողովը՝ այս երկուշաբթի կէս օրէ վերջ ժամը 3ին, Ժանթիյյիի դպրոցի սրահը : Ներկայ կ՚ըլլայ Կեդր. վարչութեան ներկայացուցիչը : Պարտաւորիչ ներկայութիւն :

ԱՐԵՒՄՈՒՏՔԻ ԼՍԱՐԱՆԻՆ հերթական գումարումը այս երկուշաբթի երեկոյ, Քլէման ճաշարանին մէջ, 6 rue de Maubeuge (մեթրօ՝ Քատէ կամ Փէլըթիէ) : Զեկոյց՝ Պ. Գրիգոր Թէլլալեանի : Նիւթ՝ Երազներու գիտութիւնը :

ՓԱՐԻԶԻ Ֆր. Կապ. Խաչի ընդհ. ժողովը՝ այս չորեքշաբթի ժամը 3ին, Տիկին Զիթունիի բնակարանը : Անդամատետրերը միասին բերել :

ԿԸ ՆՈՒԻՐԷ.— Պոլսէն Տիկին Մառի Թէլլալեան 500 փրանք կը նուիրէ Ֆր. Կ. Խաչի Շրջ. վարչութեան : Ստանալ «Յառաջ»էն :

